լարել, բայց թոյլատրել միայնակներու (solo) եւ պարի բազմաթիւ կրկնութիւնները անարդար կը նկատենք եւ մանաւանդ նախատրենք Կոմիտաս երգչախումբին ուղղուած :

Այդ նախատրնքէն վերջ Կոմիտաս երգչախումբը իր ծայրագոյն պատիւն ընծայեց ուղղակի Կոմիտաս վարդապետին (որուն միշտ արժանի է Ան) մնալով միշտ բեմին վրայ եւ մանաւանդ շարունակելով երգել :

Անկէ վար, խաղրուած էր Տիկին Բուդաղեանէն եւ մասնաւանդ երկուստեք համաձայնուած, հանդէսի վերաչաւորութեան կոչ մը ուղղելու ներկայ ժողովուրդին, որպէսզի երկսեռ երիտասարդութիւնը իր սանակցութիւնը բերէ Կոմիտաս երգչախումբին: Այդ ալ արգիլուեցաւ վերջին պահուն, ցաւալի յիշատակ մըն ալ աւելցնելով մեր վրայ :

Այդ յայտարարութիւնը ազգային հանդամանք ունէր պարզապէս եւ երբեք անձնական եւ մէկ վայրկեան ալ չէր տեւեր :

Առանց այդ կասկաւ համաձայնութեան Փարիզի եկեղեցւոյ պատ. հոգաբարձութեան միջոցներ չէին պակսեր թոյլցրկսեր ցրուելու այդ նըպատակին համար :— Նշաա Սորգայեան

---

նը ունի 30.000 անդամներ: Առջի օր իրենց մէկ բանբերը կը յայտարարէր թէ «պիտի պայքարին բոլոր միջոցներով», խափանելու համար Սաները - կայէն հասած զրասաթերքին պարպումը:

Առաջին բեռներուն համար Ստրպուրը ընտրուած է անոր համար որ համայնավարները մեծ թիւ մը չեն կազմեր քարափի բանուորներուն մէջ եւ շատերը անգործ են ամիսներէ ի վեր: Յետոյ, նաւայնս զօրանոց մը կը գտնուի քարափին մօտ: Կ'ենթադրուի որ համայնավարները պիտի փորձեն զրասաթերքին դէպի ներս փոխադրութիւնը խափանել, եթէ չկարենան արգիլել պարպումը: Կառախումբերու պաշտօնեաներուն մէջ ալ շատեր պատրաստուած են այս պայքարին համար, որ կը մղուի միջազգային գետնի վրայ, յանուն խաղաղութեան :

## Լրտեսը դատապարտուեցաւ

Քլաուզ Ֆուքս, գերմանածին գիտնականը որ հիւլէական գաղտնիքներ յայտնած էր Խ. Միութեան, 1942էն 1949, դատուելով Լոնտոնի մէջ, դատապարտուեցաւ առաւելագոյն պատիժին,— 14 տարի բանտարկութեան: Ամբաստանեալը ամէն բան խոստովանած էր ձերբակալութենէն առաջ ալ, այնպէս որ դատավարութիւնը հազիւ 90 վայրկեան տեւեց: Դատարանին նախագահը յայտարարեց ամբաստանեալին.

— «Դուք անդարմանելի վնասներ պատճառեցիք թէ այս երկրին եւ թէ Մ. Նահանգներուն, մղում տալու համար ձեր քաղաքական դաւանանքին: Դուք վտանգեցիք ապաստանի իրաւունքը: Այժմ կրնա՞նք ապաստան տալ այնպիսի քաղաքական փախստականներու որոնք կրնան հետեւորդներն ըլլալ այս նենգաւոր դաւանանքին եւ ծպտուիլ, խածնելու համար այն ձեռքը որ կը կերակրէ զիրենք »:

Ընդհ. դատախազը, Սըր Հարթլի Շօքրոս, որ Անգլիոյ ներկայացուցիչն էր Նիւրընպէրկի դատավարութեան ատեն, բացատրեց թէ ամբաստանեալին արարքը «իրագիտական դաս մըն է, գաղափար կազմելու համար արդի համայնավարութեան մասին»: Յետոյ մանրամասնօրէն թուեց Ֆուքսի լրտեսական գործունէութիւնը 1943ին Անգլիոյ մէջ, 1943 Դեկտ. 31էն 1944 Օգոստոս մէկ Նիւ Եորքի մէջ, 1945ին Պոսթընի մէջ, 1947ին դարձեալ Անգլիոյ մէջ :

Ամբաստանեալը շնորհակալութիւն յայտնեց « արդար դատավարութեան » համար, նաեւ իր փաստաբանին եւ բանտի վարչութեան, եւ յայտարարեց թէ «ուրիշ ոճիրներ ալ գործած է»:

### ՔԱՆԻ ՄԸ ՏՈՂՈՎ

ԵՐԿՈՒ ԶՕՐԱՎԱՐՆԵՐՈՒ հարցին քննութեան առթիւ, լսուեցաւ հարիւրապետ Ժիռարտօ, անդամ Ֆրանսայի լրտեսական եւ հակալրտեսական կազմակերպութեան: Ըստ. թէ յարձակում կրած է իր գրասենեակին մէջ, որովհետեւ «շատ բան գիտէ», թէ «քաւութեան նոխազ մըն է», թէ փախստական Փէյէ աւելի զօրաւոր էր քան զօր. Ռըվէռ: «Դուն մի խառնուիր այս գործին, ըսեր է իրեն Փէյէ, շատ մը քաղաքական դէմքեր կան այս գործին մէջ, չէքեր բաժնուած են, դուն ստորադաս պաշտօնեայ մըն ես, բան չես հասկնար» եղեր:

ԶՕՐ. ՎԷԿԱՆ իր նոր գիրքը ստորագրելով զբաղած էր գրատան մը մէջ, երբ հարիւր հակառակորդներ յարձակում գործելով ջարդուփշուր ըրին ապակիները եւ փճացուցին շատ մը գիրքեր: Աթոռներ եւ գիրքեր նետուեցան աջ ու ձախ: Ցուցարարները փախան, երբ ոստիկանութիւնը օգնութեան հասաւ :

ՄՈՍԿՈՒԱՅԷՆ կը հեռագրեն թէ մեծ խանդավառութիւն պատճառեց գիներու զեղչը: Ահագին բազմութիւն խռնուած է խանութներու առջեւ, օգտուելու համար գիներու կրճատումէն:— Ուաշինկթընի մէջ քարոզչական հնարք մը կը նկատեն ռուբլիի սակին բարձրացումը, ազդելու համար արբանեակ երկիրներուն վրայ: Միւս կողմէ վիճելի կը գտնեն յայտարարուած զեղչերուն արժէքը, դիտել տալով թէ գիները հարիւր առ հարիւր բարձրացած էին 1948ին:

ԱՆԳԱՐԱՅԷՆ կը հեռագրեն թէ կառավարութիւնը մերժեց ամերիկեան ընկերութեանց առաջարկը՝ Թուրքիոյ քարիւղին շահագործման մասին: Ամերիկացիները 12.5 առ հարիւր բաժին կը խոստանան Թուրքիոյ, պահանջելով քարիւղի բոլոր հանքերուն մենաշնորհը: Իրենց հաշուով, Թուրքիա 200 միլիոն ոսկի պիտի շահի, եթէ ընդունի 12.5 առ հարիւրի պայմանը :



### ՈՒՇԱԴՐՈՒԹԻՒՆ

ՄԱՐՍԷՅԼ, 29 Ապրիլ Շաբաթ երեկոյ

ՍԱԼ ՄԱԶԸՆՕ

Նուագահանդէս ԼԵՒՈՆ ՂԵՒՈՆԴԵԱՆԻ :

Մանրամասնութիւնները յաջորդով :

Mlle. Andrée PERLOT

ՀՐԱԺԵՇՏ ՏԷՐ ՆԵՐՍԷՍԵԱՆ

Ամուսնացած

23 Փետրուար 1950 Villefranche s/Mer

### ՑՈՒՑԱՏԵՏՐ

ԻՍԻ.— Հ. Յ. Դ. «Զաւարեան» կոմիտէին ընդհ. ժողովի կը հրաւիրէ բոլոր ընկերները այս շաբաթ իրիկուն ժամը 8.30ին Խրիմեան սրահը: Պարտաւորիչ ներկայութիւն :

ՊԱՆԵԷՍ — ԴԱՇՆԱԿԻ Արծիւ ենթակոմիտէն իր բոլոր ընկերները ընդհ. ժողովի կը հրաւիրէ այս ուրբաթ իրիկուն ժամը 8.30ին, 69 rue d'Arcueil, Պանեէօ :

ՓԱՐԻԶ.— Հ. Յ. Դ. Եղիպտացի կոմիտէի ընդհ. ժողովը այս շաբաթ իրիկուն, ժամը 8.30-ին, Սօսիէթէ Սավանթ: (Շար. նախորդ ժողովի): Պարտաւորիչ ներկայութիւն :

ՓԱՐԻԶԱՀԱՅ ԼՍԱՐԱՆԻ հերթական հաւաքոյթը՝ ուրբաթ իրիկուն ժամը 8.30ին, Քաֆէ Ռէժան: Կը խօսի Սր. ՇԱՔԷ ՏԷՐ ՄԵԼՔՈՆԵԱՆ: Նիւթը՝ Ռումանացի գրագէտ Կէորկիուի «25րդ ժամը»:

ԿԱՊՈՅՏ ԽԱՉԻ Փարիզի մասնաճիւղին ընդհ. ժողովը՝ այս երեքշաբթի ժամը 3.30ին, Տիկին Գազազեանի բնակարանը, 6 rue St. Sulpice: Կարեւոր օրակարգ :

### ԲԱՆԱԽՕՍՈՒԹԻՒՆ ՊՕՄՈՆԻ ՄԷՋ

Պօմոնի (Մարսէյլ) Թաղ. խորհուրդը կը ծանուցանէ թէ Գեր. Հայր ՅՈՎՍԷՓ ԴԱՐՈՒԹ, հայերէն պիտի բանախօսէ Պօմոնի եկեղեցւոյ սրահին մէջ, յառաջիկայ 5 Մարտ, կիրակի, կէսօրէ վերջ ժամը 15ին, նիւթ ունենալով «Մեր նախնեաց կրօնական եւ ազգային պատմութիւնը»: Շարժանկարով պիտի ցուցադրէ (լուսանկարչական գունաւոր հիանալի պատկերներով՝ Ֆապիօլայի ֆիլմը, projection fixeով) : Մուտքը ազատ է:

### ՄԱՐՍԷՅԼԻ ՄԷՋ

Հ. Բ. Ը. Մ. Երիտասարդաց Միութիւնը իր տարեկան շքեղ պարահանդէսը կուտայ Splendid Hôtelի սրահներուն մէջ, այս շաբաթ գիշեր ժամը 9էն մինչեւ լոյս : Ճոխ յայտագիր, հաճելի անակնկալներ: Ընտիր պիւֆէ :



Le Gérant: A. NERCESSIAN

Imprimerie DER AGOPIAN, 17 Rue Damesme - (13)

համաձայն հեղինակին պարագրութեան, ներդաշնակ, ճշգրիտ եւ կշռաւոր, Տէր Յարութիւնեանին décorին մէջ, մոխրագոյն, թուխ եւ կրակէ գոյն կայծերով խայտաբղէտ, զոր նուազ կը սիրենք քան իր զգեստները ...»:

Cette Semaine իր կարգին կը գրէ.— «...Զգեստներուն համար Տէր Յարութիւնեան յղացած է տարօրինակ եւ ներշնչող «մայօ»ներ, կպչուն, սահուն, սեւէն մոխրագոյն, կարմիր եւ վարդագոյն »...

René Jouglet (Nouvelles Litteraires).— «... Գալով Պ. Տէր Յարութիւնեանի «տէքոռ»ին, ինծի կը թուի թէ կը ձգտի դէպի երաժշտութեան ձեւակերպումը, գոյներու եւ գիծերու համեմատութիւններով: Կը ստեղծէ, շատ բաց զգեստներով, հատընտիր մթնոլորտ մը »:

Մարսէյլ՝ վեց շաբաթէ ի վեր — բացի Շէրպուռէն, ուր Յունուար 6ին կատարուած քուէարկութեամբ, 21ի դէմ 256 ձայնով որոշուեցաւ պարպել ամերիկեան նաւերը:

Մարսէյլի նաւահանգիստը գրեթէ անշարժութեան դատապարտուած է, իբրեւ հետեւանք զանազան ընդհարումներու: Ուրբաթ օր ընդհանուր գործադուլ յայտարարուեցաւ այդ նաւահանգստին մէջ, բայց 400 բանուորներ կրցան շարունակել աշխատանքը, 11 նաւերու վրայ:

★ Փարիզի աւելածուներուն գործադուլին հետեւանքով, շատ մը թաղերու աղբամանները կը պարպուին զինուորներու կողմէ:

★ Կը վախցուի որ կացութիւնը ծանրանայ, եթէ ընդհ. գործադուլ յայտարարեն 500.000 հանքագործներ:

## ՔԱՆԻ ՄԸ ՏՈՂՈՎ

ՄՈԼՈԹՈՎ ճառ մը խօսելով, «շանթաժ» կոչեց Ջրածին ռումբը: «Երէկ արեւմտեան պետութիւնները մեզ կ՚ահաբեկէին հիւլէական ռումբով, այսօր ահուսարսափ կը տարածեն այսպէս կոչուած Ջրածին ռումբով: Մինչ կը կարծէին թէ իրենց մենաշնորհն է հիւլէական ռումբը, խորհրդային ժողովուրդը պարապ չկեցաւ, այլ տիրացաւ հիւլէական ուժի գաղտնիքին եւ զէնքին: Միայն յիմարներ կրնան հաւատալ թէ պիտի ահաբեկեն Խ. Միութիւնը »:

ԱՐԵՒՄՏԵԱՆ ԳԵՐՄԱՆԻՈՅ վարչապետը, Տոքթ. Ատենաուըր, զեկուցում տալով խորհրդարանին առջեւ, յայտարարեց թէ բողոքագիր մը ուղղած են Ֆրանսայի, Սարի շրջանի մասին կնքուած համաձայնութեան դէմ: Այս առթիւ կրկնեց թէ պատրաստ են բարեկամութիւն եւ միութիւն հաստատելու Ֆրանսայի հետ, «միայն արագ եւ յանդուգն ճիգեր կրնան փրկել այսօրուան Եւրոպան: Մենք պատրաստ ենք»:— Ֆրանսական կառավարութիւնը յայտարարեց թէ չի կրնար բանակցիլ գերմանական կառավարութեան հետ, Սարի մասին.— Արեւմտեան Գերմանիոյ գրաւումը 4.048.500.000 մարք (343.722.850 սթերլին) պիտի արժէ 1950–51ին:

«ԽԱՂՈՒԹԵԱՆ ԵՒ ԱԶԱՏՈՒԹԵԱՆ» Ֆրանսացի կուսակիցներու համագումարը բացուեցաւ Փարիզի մէջ, մասնակցութեամբ հազարաւոր պատուիրակներու:

ԹԷՀՐԱՆԷՆ կը հեռագրեն թէ 50 Թիւրքմէններ եւ Պարսիկներ ձերբակալուեցան սահմանին վրայ, Կասպից ծովուն արեւելեան կողմը, այն ամբաստանութեամբ թէ լրտեսութիւն կը կատարէին «ի հաշիւ օտար պետութեան մը»: Պաշարման վիճակ հրատարակուեցաւ:

ՎՆԱՍԱՐԱՐՈՒԹԵԱՆ դէմ քուէարկուած օրէնքը Հանրապետութեան Խորհուրդին մէջ ալ խստօրէն քննադատուեցաւ համայնավարներու կողմէ, որոնք քսան ներկայացուցիչներ ունին: Վիճաբանութիւնները շարունակուեցան մինչեւ առտու, եւ օրինագիծը քուէարկուեցաւ 20ի դէմ 279 ձայնով:— Դատ. քննութիւն բացուեցաւ Ազգ. ժողովի ուրբաթ օրուան նիստին մէջ պատահած բուռն միջադէպերուն առթիւ:

Հ. Մ. Մ.ի թատերական ներկայացումը՝ Քրեմլէն Պիսէթրի մէջ, տեղի չունեցաւ շաբաթ գիշեր, գործադուլի պատճառով:



## ՓԱՐԻԶԻ ՄԵՐ ԲԱԺԱՆՈՐԴՆԵՐՈՒՆ

Յառաջիկայ Ապրիլին, երբ կը լրանայ ՅԱՌԱՋի վերհրատարակման 5րդ շրջանը, թերթ պիտի չստանան այն բաժանորդները, որոնք չենվճարած իրենց 5րդ տարուան բաժնեգինը:

Մեր Mandat - chèqueի քարդերով իւրաքանչիւրին տեղեկացուցած ենք իրենց պարտքը:

ՎԱՐՉՈՒԹԻՒՆ

## ԹԱՏԵՐԱՍՐԱՀ

Մ. ՊԷՇԻԿԹԱՇԼԵԱՆ – Գ. ԱԼԻՄՇԱՀ

ԹԱՏԵՐԱԿԱՆ ՆԵՐԿԱՅԱՑՈՒՄ

Կազմակերպուած Ս. Մուրատեան վարժարանի աշակերտներէն, Կիրակի 12 Մարտ, ժամը ճիշդ 15.30ին:

1.— ԹԷՈԴՈՐ ՍԱԼՀՈՒՆԻ ողբերգութիւն 4 արար, ազգային պատմական դրուագ Ս. Գ. Լուսաւորչի դարուն:

3.— LE COLIS DE M. DOMINIQUE comédie en un acte:

3.— ԵՐԳԻ ԴԱՍԸ, երգախառն զաւեշտ մէկ արար:

4.— ԿԸԼԿԸԼ ՄԱՐԳԱՐ, զաւեշտ մէկ արար: Տոմսերը կանխաւ ապահովել, Մուրատեան վարժարան, 26 rue Trovon. Sevres (S. et O.):

## ՊԱՐԱՀԱՆԴԷՍ

Կազմակերպուած Ս. ԽԱՉ ընկերակցութեան կողմէ, ի նպաստ հայ հիւանդներու եւ կարօտեալներու:

Բարձր հովանաւորութեամբ LOUIS MARINի

Maison des Centrauxի մէջ, 8 rue Jean Goujon, mé tro Champs Elysées, Կիրակի 16 Ապրիլ ժամը 16էն կէս գիշեր:

Գեղարուեստական բաժին, պիւֆէ, նուագախումբ: Ձեր տոմսերը ապահովել Ets. Vimax, 25 rue de Trévise կամ Ս. Խաչ եկեղեցիէն, 10bis, rue Thouin, Paris (5):

Այրի Տիկին Սիրվարդ Թորիկեան, Տէր եւ Տիկին Յակոբ Թորիկեան, Պ. Ժանօ Թորիկեան, Օր. Ատրինէ Թորիկեան, Տէր եւ Տիկին Յովհ. Ուզունեան, Տէր եւ Տիկին Նազար Ուզունեան եւ բոլոր ազգականները կը ծանուցանեն իրենց զաւկին, մօրեղբօր, փեսին եւ ազգականին,

Պ. ՆԻԿՈՂՈՍ ԹՈՐԻԿԵԱՆԻ

դառնաղէտ մահը, որ տեղի ունեցաւ ուրբաթ, 10 Մարտ, 40 տարեկան հասակին մէջ:

Յուղարկաւորութիւնը պիտի կատարուի երկուշաբթի առտու ժամը 10.30ին, Լիոնի հայկական եկեղեցին, rue Louis Blanc:

ՈՂԲԱՑԵԱԼ ԸՆԿ. Ա. ԱՏՈՄԵԱՆԻ մահուան առթիւ Հ. Յ. Դ. «Վարդան» կոմիտէն եւ ընկեր Խաչիկ Մկրտիչեան հազարական Ֆր. կը նուիրեն Հ. Յ. Դ. Վեթ. Ֆոնտին:



ՍՏԱՑԱՆՔ.— **Bulletin de l'Union Medecins Arméniens**, Թիւ 4 (Յունուար 1950): Հասցէ.— . Dr N. Agadjanian, 85 Ave. Ségur, Paris (5):



## ՅՈՒՇԱՏԵՏՐ

ՊԱՆԵԷՕ ՔԱՇԱՆԻ եւ շրջանի դպրոցի յանձնախումբը, խորհրդակցական ժողովի մը կը հրաւիրէ բոլոր կրթասէր անձերը, այս երկուշաբթի, ժամը 9ին, 43 rue Madame Curie, Պանեէօ, ծանօթ հաւաքատեղին:

ԼԻՈՆ.— Ֆր. Կապոյտ Խաչի մասնաճիւղի ժողովը այս երկուշաբթի, երեկոյեան ժամը 8.30ին, 78 rue Rabelais, դպրոցին սրահը: Խիստ կարեւոր օրակարգ: Կը խնդրուի մասնաւորապէս Սանուհիներէն ներկայ ըլլալ:

ԱՐԵՒՄՈՒՏՔԻ լսարանին այս երկուշաբթիի հերթական հաւաքոյթը յետաձգուած է գործադուլներու անորոշութեան պատճառով:

ՇԱՎԻԼ.— Ֆր. Կապ. Խաչի ընդհ. ժողովը՝ այս հինգշաբթի երեկոյ ժամը 9ին, դպրոցի սրահը:



ՍՂԱԳԻՐ – ՄԵՔԵՆԱԳԻՐ ՕՐԻՈՐԴ ՄԸ

Գործ կը փնտռէ ազգային կամ առեւտրական հաստատութեան մը մէջ: Դիմել «Յառաջ»ի վարչութեան:


**Le Gérant: A. NERCESSIAN**

Imprimerie DER AGOPIAN, 17 Ru eDamesme – (13)

